Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6 (108)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6 (108)


«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՎՐԻՊԱԿ

| Էջ | Տող | | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|---|
| 3 | 2 | ներքևից | հետ | դեմ |
| 5 | 12 | վերևից | գրում է | գրում էր մանիֆեստում |
| 5 | 10 | » | ժամը: | ժամը, |
| 6 | 4 | » | անգամ | անգամ |
| 14 | 3 | վերևից | ֆրանսիական ժողովրդին նետեցին | և նրանց տերերը ֆրանսիական ժողովրդին նետեցին |
| 15 | 3 | » | սոցիալիստական | սոցիալական |
| 15 | 3 | ներքևից | չեն մոռացել | հիշում են |
| 16 | 10 | » | հաղթած | հաղթանակած |
| 18 | 11 | վերևից | գործնական | գործնական |

Գ. ԴԻՄԻՏՐՈՎ

(ԿՈՄԻՆՏԵՐՆԻ ԳՈՐԾԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ)

# ՓԱՐԻԶԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Յոթանասուն տարի սրանից առաջ՝ 1871 թվի մարտի 18-ին, Ֆրանսիան և Եվրոպան ցնցվեցին Փարիզի ռևոլյուցիոն մասսաների մարտական կոչից՝ ԿԵՑՑԵ՛ ԿՈՄՈՒՆԱՆ:

Ավելի քան երկու ամիս Փարիզի պրոլետարներն անսահման հերոսությամբ ու անձնվիրությամբ կռվում էին ներքին և արտաքին թշնամիների բազմության հետ Փարիզի Կոմունայի սրբազան գործի հա-

մար։ Փարիզի կոմունարներն իրենց արյունով գրել են բանվոր դասակարգի ազատության համար մղվող պայքարի պատմության մեջ ամենափառահեղ, ամենանշանավոր էջերից մեկը։

Փարիզի Կոմունան բանվոր դասակարգի առաջին լուրջ փորձն էր նվաճել քաղաքական իշխանություն իր համար, ստեղծել իր սեփական կառավարությունը, սահմանել պրոլետարիատի դիկտատուրան։

Փարիզի Կոմունան սաղմն էր նոր տիպի պետության, պրոլետարական պետության, նա Սովետների նախատիպն էր։

Փարիզի Կոմունան արտահայտում էր միջազգային պրոլետարիատի շահերն ու ամենանվիրական ակնկալությունները և դարձել էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը։

Փարիզի Կոմունան մասսաների հարազատ գործն էր, նրանց ստեղծագործական ձեռներեցության ու ռեվոլյուցիոն խանդավառության կերտվածքը։

Փարիզի Կոմունան ցասման մի վիթխարի պայթյուն էր ֆրանսիական բուրժուազիայի դավաճանության դեմ՝ 1870—71 թ. թ. պատերազմի մեջ, բուրժուազիայի դավա-



դրության դեմ, որով նա ուզում էր ոչնչացնել ռեսպուբլիկան և վերականգնել միապետությունը։ Նա անմիջական պատասխան էր բուրժուական-կալվածատիրական ռեակցիայի այն փորձերին, որոնցով ուզում էին զինաթափ անել Փարիզի բանվորներին, ջախջախել ֆրանսիական ժողովրդին և ստիպել նրան վճարել Լուի Բոնապարտի տանուլ տված ավանտյուրիստական պատերազմի ծախսերը և տալ պատերազմական ծանր կոնտրիբուցիան։

«Փարիզի պրոլետարները,— գրում է մարտի 18-ին վերակազմված ազգային գվարդիայի Կենտրոնական Կոմիտեն,— տեսնելով տիրող դասակարգերի պարտություններն ու դավաճանությունը, հասկացան, որ հասել է ժամը։ Երբ նրանք պետք է փրկեին դրությունը, վերցնելով իրենց ձեռքը հասարակական գործերի կառավարումը... Նրանք հասկացան, որ իրենց վրա է դրված այդ պարտականությունը, որ իրենց է պատկանում սեփական բախտի տերերը լինելու և կառավարական իշխանությունն իրենց ձեռքն առնելու անվիճելի իրավունքը»։

Գիտական կոմունիզմի հիմնադիրներ՝

Մարքսը, Էնգելսը, ծավալելով հախուռն, եռուն գործունեություն ի պաշտպանություն Կոմունայի և ցույց տալով ամեն տեսակ օգնություն Փարիզի կոմունարներին, նրա արյունահեղ ճնշումից հետո, բարձր էին գնահատում Փարիզի Կոմունայի համաշխարհային պատմական նշանակությունը: Բացատրելով Կոմունայի թուլությունները ու սխալները, Մարքսը և Էնգելսը բացառիկ ուժով ընդգծում էին այն դրականը, որ Կոմունան արել է, և ամենից առաջ այն, որ նա, ըստ էության եղել է բանվոր դասակարգի կառավարություն, որ նա ներկայացնում էր քաղաքական մի ձև (ֆորմա), որի տիրապետության օրով կարող էր տեղի ունենալ աշխատանքի տնտեսական ազատությունը: 1871 թվի ապրիլին Մարքսը գրում էր. «Բանվոր դասակարգի պայքարը կապիտալիստների դասակարգի և պետության դեմ, որը ներկայացնում է այդ դասակարգի շահերը, Փարիզի Կոմունայի շնորհիվ մտավ նոր փուլի մեջ: Ինչպես էլ որ գործն այս անգամ անմիջականորեն վերջանար, այսուամենայնիվ համաշխարհային, պատմական կարևորություն ունեցող նոր ելակետը նվաճված է»:



Փարիզի Կոմունայի փորձով Մարքսը գտավ տեսականորեն իր դրած այն հարցի կոնկրետ, գործնական լուծումը, թե պրոլետարական ռևոլյուցիան ինչով պետք է փոխարինի բուրժուական պետական մեքենային, ինչ տեսակ պետք է լինի պետական կառուցվածքի նոր տիպը, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու շրջանում: Կոմունան ապացուցեց, որ բանվոր դասակարգը չի կարող ուղղակի տիրել պետական պատրաստի մեքենային և գործի դնել այն՝ իր սեփական նպատակների համար, այլ պարտավոր է սահմանել պրոլետարիատի դիկտատուրան: Կոմունան ռևոլյուցիա էր ոչ թե պետական իշխանության այս կամ այն ձևի դեմ, որպեսզի հանձնի այդ իշխանությունը տիրող դասակարգերի մի մասի ձեռքից մյուս մասի ձեռքը, այլ ռևոլյուցիա էր այն նպատակով, որ ջախջախի բուրժուական դասակարգային տիրապետության պետական մեքենան: «Եվ այս պատճառով,— գրում է Մարքսը,— ինչպիսին էլ որ լինի նրա ճակատագիրը (Կոմունայի ճակատագիրը) Փարիզում, նա ողջ աշխարհը կտարածվի: Եվրոպայի և Միացյալ Նահանգների բանվոր դասակարգը, միանգամից ողջունեց

այն, որպես աշխատության կախարդական խոսք»։

Մարքսի մահից հետո Էնգելսը ուժգին կերպով հանդես եկավ օպորտունիստների դեմ, որոնք փորձում էին բուրժուազիայի հետ միասին քողարկել Փարիզի Կոմունայի նշանակությունը և նրա մեծ դասերը, շեղել պրոլետարիատին իր ռևոլյուցիոն ճանապարհից։ 1891 թվին, Կոմունայի 20-րդ տարեդարձի առթիվ Էնգելսը գրեց. «Վերջին ժամանակներս սոցիալ-դեմոկրատական Փիլիստերը (քաղքենին) նորից սկսում է փրկարար սարսափ զգալ պրոլետարիատի դիկտատուրա խոսքերի վրա։ Ցանկանո՞ւմ եք, հարգելի պարոններ, իմանալ թե այդ դիկտատուրան ինչպիսի տեսք ունի։ Նայեցե՛ք Փարիզի Կոմունային։ Դա պրոլետարիատի դիկտատուրան է»։

Մարքսի և Էնգելսի գործի հանճարեղ շարունակողները, մեր դարաշրջանի մեծագույն մտածողներն ու ռևոլյուցիոներները—Լենինը և Ստալինը ոչ միայն բարձր են գնահատել Փարիզի Կոմունայի նշանակությունը, այլև փայլուն կերպով օգտագործել են նրա փորձը։



Ամբողջ հոգով հետաքրքրվելով շահագործվողների ու ճնշվածների բոլոր ռևոլյուցիոն շարժումներով բոլոր երկրներում, խորապես ուսումնասիրելով այդ շարժումները, Լենինը և Ստալինը միշտ աշխատել են և կարողացել են նրանցից անհրաժեշտ դասեր վերցնել, որպեսզի գաղափարականապես, քաղաքականապես և կազմակերպչորեն ավելի լավ զինեն ռուսական և միջազգային պրոլետարիատին։

1908 թվին Լենինը գրել է. «Կոմունան սովորեցրել է եվրոպական պրոլետարիատին կոնկրետ կերպով դնել սոցիալիստական ռևոլյուցիայի խնդիրները»։ 1911 թվի ապրիլին Լենինն ընդգծում է. «Որպես սոցիալական ռևոլյուցիայի առաջավոր մարտիկ, Կոմունան ձեռք է բերել համակրանք ամենուրեք, որտեղ տանջվում և պայքարում է պրոլետարիատը։ Նրա (Կոմունայի) կյանքի և մահվան պատկերը, բանվորական կառավարության տեսքը, որը խլել և պահել էր իր ձեռքում ավելի քան երկու ամիս աշխարհիս մայրաքաղաքը, պրոլետարիատի հերոսական պայքարի և նրա տանջանքի տեսարանը պարտությունից հետո,— այդ ամենը բարձրացրեց միլիոնա-

վոր բանվորների ուղին, պարզեցրեց նրանց հույսերը և գրավեց նրանց համակրանքը սոցիալիզմի կողմը»: Գտնվելով դեռևս Ցյուրիխում, 1917 թվի մարտի 24-ին, Լենինը գրել է. «Գնալով այն ճանապարհով, որ ցույց է տվել 1871 թվի Փարիզի Կոմունայի և 1905 թվի ռուսական ռևոլյուցիայի փորձը, պրոլետարիատը պետք է կազմակերպի և զինի բնակչության բոլոր ամենաաղքատ շահագործվող մասերը, որպեսզի նրանք իրենք անմիջականորեն վերցնեն իրենց ձեռքը պետական իշխանության օրգանները, իրենք կազմեն այդ իշխանության հիմնարկները»: 1917 թվի ապրիլի կեսին Լենինն ընդգծում է. «Կոմունայի իսկական էությունը նրանում չէ, որտեղ սովորաբար փնտրում են բուրժուաները, այլ առանձին տիպի պետություն ստեղծելու մեջն է: Իսկ այդպիսի պետություն Ռուսաստանում արդեն ծնվել է, դա հենց Բանվորների և Զինվորների Դեպուտատների Սովետներն են»:

Կոմունայի պատմական նշանակության ծավալուն և միևնույն ժամանակ չափազանց սեղմ բնորոշումը տալիս է ընկեր Ստալինը: «Սովետների Ռեսպուբլիկան



այսպիսով հանդիսանում է,—գրել է ընկեր Ստալինը 1924 թվի ապրիլին,— այն որոնվող և, վերջապես, գտնված քաղաքական ձևը, որի շրջանակներում պետք է իրագործվի պրոլետարիատի տնտեսական ազատագրությունը, սոցիալիզմի լիակատար հաղթությունը:

Փարիզի Կոմունան այդ ձևի սաղմն էր: Սովետական իշխանությունը նրա զարգացումն ու ավարտումն է»:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի հաղթության նախադրյալը եղել է 1905 թվի ռևոլյուցիայի գլխավոր փորձը: Սակայն այդ հաղթության վճռական պայման հանդիսացել է այն, որ պրոլետարիատին ղեկավարում էր մարտական և հետևողականորեն-ռևոլյուցիոն պարտիան— բոլշևիկների պարտիան, այն գլխավորը, որը պակասում էր Փարիզի Կոմունային: Լենինը և Ստալինը, քննադատորեն ուսումնասիրելով և օգտագործելով բոլոր երկրների պրոլետարիատի պայքարի բոլոր դասերը և, առաջին հերթին, Փարիզի Կոմունայի և 1905 թվի Սովետների փորձի դասերը, նախապատրաստված բերին ռուսական պրոլետարիատին

դեպի Հոկտեմբերը: Լենինի-Ստալինի փառահեղ պարտիայի ղեկավարությամբ հաղթանակած պրոլետարիատը կարողացավ պատմականորեն շատ կարճ ժամանակամիջոցում իր անդուլ պայքարով թշնամիների դեմ և իր ստեղծագործական մեծ խանդավառությամբ հաղթահարել հսկայական դժվարությունները, լիկվիդացիայի ենթարկել դասակարգերը, կառուցել սոցիալիստական հասարակություն և անցնել այդ հասարակության բարձրագույն փուլի ուղին— կոմունիզմի ուղին:

Պրոլետարիատի դիկտատուրայի և պրոլետարական պետության պրոբլեմը դրել և պարզաբանել են Մարքսը և Էնգելսը, այդ պրոբլեմի ամենից ավելի ընդհանուր գծերով: Լենինը և Ստալինը այդ բնագավառում ավելի ևս զարգացրին ու հարստացրին Մարքսիզմը և՛ տեսական, և՛ գործնական-ստեղծագործական տեսակետից: Սակայն ամենից բարդ, դժվարին և նոր պրոբլեմներն այդ բնագավառում բաժին ընկան մշակելու և լուծելու ընկեր Ստալինին: ՍՍՌՄ-ի Ստալինյան Կոնստիտուցիան, անդրադարձնելով ու արձանագրելով անցածն ու արդեն նվաճածը, ան-



հերքելի ապացույց է հանդիսանում այն բանին, որ այդ պրոբլեմները լուծված են հանձարեղ կերպով ոչ միայն տեսականորեն, այլև գործնականորեն:

Այն, ինչի մասին խորհել են մարդկության ամենալուսավոր և հեռատես մտքերը, ինչ որ ոգևորել է Փարիզի Կոմունայի մարտիկներին, այն, ինչի մասին մտածել են, մտածում են և երազում աշխատանքի հարյուր միլիոնավոր մարդիկ— հասարակություն՝ առանց մարդը մարդու շահագործման և ճնշման, առանց մի ազգի մյուս ազգի կողմից ճնշման— իրականացված է Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեծ երկրում:

***

Ներկայումս Ֆրանսիան ապրում է ծանր օրեր. Ֆրանսիական աշխատավորները աննկարագրելի տանջանքներ են կրում: 1870 թվի սեպտեմբերին բուրժուական «ազգային պաշտպանության կառավարությունը» հայտարարելով քաղաքական իշխանությունը, օգտագործեց նրա բոլոր լծակներն ու բոլոր միջոցները՝ ընդհուպ կազմակերպելով «ազգային դավաճանություն», որպեսզի ջախջախի Ֆրանսիա-

կան ժողովրդին: 1939 թ. սեպտեմբերին Ֆրանսիայի բուրժուական կառավարողները ֆրանսիական ժողովրդին նետեցին պատերազմի մեջ, նախապես զրկելով նրան բոլոր ազատություններից և սպանելով նրա կամքը: Շնորհիվ կառավարող դասակարգերի, որոնք ամենից բարձր էին դասում իրենց դասակարգային արտոնությունները ու ակցիոն հաշիվները, շնորհիվ նրանց ագահության, կաշառվածության, բթամտության և նեխվածության, այդ պատերազմը հանգեց պարտության և աղետի: Եվ այժմ, վերսալցիների հաջորդները փորձում են, օգտագործելով պարտությունը՝ ստիպել ֆրանսիական ժողովրդին վճարել պատերազմի ծախսերը, պարտության ծախսերը, վճարել օկուպացիայի ծախսերը, տանել սնանկացած բուրժուական ռեժիմի հետևանքները: Եվ այժմ նրանք, ինչպես իրենց վերսալյան նախորդներն էին անում, փորձում են պրովոկացիայի ենթարկել ֆրանսիական պրոլետարիատին, շովինիստական և հակահրեական կատաղի կամպանիաներ են վարում, հալածանքի ամոթալի տեսարաններ սարքում ֆրանսիական ժողովրդի իսկական



ներկայացուցիչների և մարտիկների դեմ, կոմունիստների դեմ, որոնք պայքարում են սոցիալիստական և ազգային ազատության համար: Սակայն ֆրանսիական ժողովուրդը շատ է տանջվել, շատ բան է սովորել և որը գլխավորն է, նա սկսում է հասկանալ, թե ովքեր են իր իսկական բարեկամները և թշնամիները: Հանձին ֆրանսիական կոմպարտիայի,—կոմունարների գործի արժանավոր ժառանգի և շարունակողի — որը յուրացնում է նրանց դասերը և խուսափում նրանց սխալներից, օգտագործում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի փորձը և տիրապետում Մարքսիզմ-Լենինիզմի ուսմունքին, այդ պարտիայի մեջ ֆրանսիական պրոլետարիատը կգտնի այն ուժն ու այն ղեկավարին, որոնք կարող են ազատության և սոցիալիզմի համար մղվող նրա պայքարին ստույգ հաջողություն ապահովել: Այդ հաջողությունը հնարավոր է աշխատավորների միջազգային համերաշխության օգնության դեպքում: Ֆրանսիական պրոլետարները չեն մոռացել, որ ինտերնացիոնալիզմի դրոշը Փարիզի կոմունարների դրոշն էր: Կոմունայի դեկրետները,

նրա ամբողջ գործունեությունը, նրա կազմը, նրա գոյությունն իսկ, նրա լոզունգները, նրա մարտիկների խանդավառ բացականչությունները և թողած ավանդները նրանց մահից առաջ,— այդ ամենը ներշընչված է ինտերնացիոնալիզմի ոգով:

Կոմունան անմահ է «Կոմունան, որին համարում էին սպանված, Ինտերնացիոնալը, որին համարում էին ընդմիշտ ջախջախված, դրանք մեր մեջն են, կենդանի և քսան անգամ ավելի ուժեղ, քան 1871 թվին»: Այսպես է ասել Էնգելսը 1892 թվին, Փարիզի Կոմունայի 21-րդ տարեդարձի առթիվ: Այսօր մենք կարող ենք է՛լ ավելի անսասան հիմք ունենալով ասել. ԿՈՄՈՒՆԱՆ ԱՊՐՈՒՄ Է:

23 տարի սրանից առաջ հաղթած Սովետական իշխանությունը, ներկայացնում է մի հզոր, համարյա 200 միլիոնանոց սոցիալիստական պետություն: Դա ԿՈՄՈՒՆԱ է— քաղաքական, տնտեսական, ռազմական, կուլտուրական և բարոյական մի վիթխարի ուժ: Նա հանդիսանում է ամբողջ աշխարհի աշխատավորների մեծագույն պատվարը՝ նրանց պայքարում հանուն ազատության, հանուն ժողովուրդնե-



րի մեջ խաղաղություն ու բարեկամու-
թյուն հաստատելուն, հանուն սոցիալիզմի:
Այսօր կապիտալիստական երկրների բազմաթիվ միլիոնավոր պրոլետարները, գյուղացիները, աշխատավորները և գաղութների ժողովուրդները տածում են ամենաջերմ համակրանք դեպի այդ սքանչելի Կոմունան— Սովետների Երկիրը, և նայում են մեծագույն հույսով հաղթանակած սոցիալիզմի մեծ պետությանը— բոլոր երկրների աշխատավորների հայրենիքին:

***

Պատահական չէ, որ ՄՕՊՐ-ը (Ռևոլյուցիայի մարտիկների օգնության միջազգային կազմակերպություն) մարտի 18-ն է ընտրել իր օրը: Այդ ընտրության մեջ կա խոր միտք, ամբողջ ծրագիր և մեծ պարտականություն: Չէ՞, որ ՄՕՊՐ-ը մի սովորական հումանիտարական բարեգործական օգնության կազմակերպություն չէ՛, այլ պրոլետարիատի միջազգային համերաշխության մի գործուն կազմակերպություն, բանվոր դասակարգի օգնության կազմակերպություն՝ նրա պայքարում իր դեմ շահագործման, ճնշման, տե-

ուրի և իմպերիալիստական Թալանչիական պատերազմների, բուրժուական կարգի։

ՄՕՊՐ-ը բանվոր դասակարգի մարտիկներին օգնելու կազմակերպություն է, նա օգնում է բանտերում և համակենտրոնացման ճամբարներում տանջվող կապիտալի գերիներին։ ՄՕՊՐ-ի անդամները երբեք չպետք է մոռանան, որ գիտական կոմունիզմի հիմնադիրները — Մարքսը և Էնգելսը եղել են միաժամանակ և առաջին այդպես ասած մեծ մոպրականները, կոմունարներին գործնական, նյութական և բարոյական օգնություն ցույց տվող անխոնջ կազմակերպողները, բոլոր երկրներում ռևոլյուցիոն մարտիկներին օգնություն կազմակերպողները․

Մարտի 18-ի օրը, մեծարելով Փարիզի կոմունարների՝ մեր փառավոր ռևոլյուցիոն նախորդների մեծ հիշատակը, մենք պարտավոր ենք տալ մեկ հաստատուն, բոլշևիկյան խոսք՝

ԵՎ ԱՎԵԼԻ ՀԱՄԱՌՈՐԵՆ ԴԱՍՏԻԱՐԱԿԵԼ ՄԱՍՍԱՆԵՐԸ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՈԳՈՎ, ԵՎ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐ ԵՎ ԱՄՈՒՐ ՊԱՀԵԼ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԴՐՈՇԸ, ՈՐԻ ԿԵՆԴԱՆԻ ՄԱՐՄՆԱՑՈՒՄՆ Է ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՆՊԱՐՏԵԼԻ ՀԱՅՐԵՆԱ-



ՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ, ՀԱՄԱՌՈՐԵՆ ՀԱՄԱԽՄԲԵԼ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԱՐՏԻԿՆԵՐԻ ՇԱՐՔԵՐԸ ՀԱՆՈՒՆ ՓԱՐԻԶԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ ԱՆՄԱՀ ԳՈՐԾԻ, ՄԱՐՔՍԻ-ԷՆԳԵԼՍԻ-ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ ՄԵԾ ԳՈՐԾԻ ԿԱՏԱՐՅԱԼ ՀԱՂԹՈՒԹՅԱՆ ՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ։

---

# ՓԱՐԻԶԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԱՄՅԱԿԸ

## (ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ)

Մարտի 18-ին լրանում է 70 տարին այն օրից, երբ Փարիզի ապստամբված բանվորները խորտակեցին բուրժուազիայի իշխանությունը և պարզեցին պրոլետարական ռեվոլյուցիայի դրոշը: Աշխատավոր մարդկության պատմության մեջ՝ վերջ տալու կապիտալիզմին և իսկական ժողովրդական իշխանություն հաստատելու դա առաջին հերոսական փորձն էր: Փարիզյան Կոմունան տևեց ընդամենը 72 օր և խեղդամահ արվեց ֆրանսիական ու միջազգային ռեակցիայի միացնական ուժերի կողմից: Սակայն Կոմունայի հիշատակն ընդմիշտ ապավորվեց ողջ աշխարհի ճնշվածների և շահագործ-



վածների գիտակցության մեջ և սրտերում:

Ամեն տարի մարտի 18-ի օրը բոլոր երկրների աշխատավորները նշում են, որպես իրենց ազատագրական պայքարի մեծ օր, որպես միջազգային ռեվոլյուցիոն համերաշխության մարտական օր:

Միջազգային պրոլետարիատը Փարիզյան Կոմունայի 70-ամյակը տոնում է անընդհատ ծավալվող համաշխարհային երկրորդ իմպերիալիստական պատերազմի պայմաններում: Նոր համաշխարհային սպանդի բոցերում, հրդեհների ծխում, ավերումների քառսում, ժողովուրդների առջև ծառանում է սնանկացած, նեխված և կործանման դատապարտված կապիտալիզմի ավազակային կերպարը:

### ՋԱՐԴԸ

1870 թվի սեպտեմբերի 2-ին, ֆրանս-պրուսական պատերազմն սկսվելուց 6 շաբաթ հետո, ֆրանսիական բանակը Սեդանի մոտ մեծ ջարդ կերավ: Նա համարյա ամբողջովին գերի ընկավ՝ Նապոլեոն երրորդի և մարշալ Մակ-Մահոնի հետ մեկտեղ:

Այն ժամանակվա ռազմական մինիստր

Լեբեֆը ֆրանս-պրուսական պատերազմի նախօրյակին հպարտորեն հայտարարեց. «Մենք պատրաստ ենք, լիովին պատրաստ։ Մեր բանակում ամեն ինչ կարգին է, անգամ մինչև վերջին զինվորի զանգապանների վերջին կոճակը»։

Իսկ իրականում, ֆրանսիական բանակը՝ պետական գանձարանի սանձարձակ գողությունների հետևանքով, բանից դուրս եկավ՝ վատ էր զինված։ 1870 թվի սեպտեմբերի 4-ին Սեդանի ջարդի լուրը հայտնի դարձավ Փարիզին։ Ժողովուրդն իմանալով Նապոլեոն երրորդի կապիտուլյացիայի մասին, ապստամբվեց և կործանեց միապետական ռեժիմը։ Ռեսպուբլիկա հռչակվեց։

Ռևոլյուցիոն պայթյունը վաղուց էր հասունացել։ Տարիների ընթացքում էր ժողովրդի մեջ կուտակվել զայրույթը՝ բազմաթիվ ռազմական ավանտյուրաների առթիվ, ապօրինի տուրքերի և հարկերի առթիվ, արքունի կլիկի վատնումների և բարձրաստիճանավորների ծախվածության առթիվ։ Դժգոհությունները արտահայտվում էին ցույցերում, գործադուլներում, որոնց ճնշման համար կառավարությունը դիմում էր գնդակահարությունների։



Սակայն միապետական ռեժիմի խորտակումը ժողովրդին իշխանություն չտվեց։ Օգտվելով մասսաների անկազմակերպվածությունից իշխանությունը գրավեց բուրժուազիան։ Կառավարության գլուխն անցավ գեներալ Տրոշյուն։ Կառավարության խոշոր դեմքերից մեկը հանդիսանում էր Տիերը, որը հետագայում դարձավ Կոմունայի դահիճը։

Փոխանակ կազմակերպելու Ֆրանսիայի պաշտպանությունը և առաջին հերթին միջոցներ ձեռք առնելու Փարիզի պաշտպանության համար, որը սեպտեմբերի 18-ին արդեն պաշարված էր պրուսական զինվորների կողմից, նոր կառավարությունը կապիտուլյացիայի պայմանների մասին թշնամու հետ գաղտնի բանակցությունների մեջ մտավ։ Նա պատրաստ էր ամեն ինչի, միայն թե չզինել հայրենասիրական վերելքով բռնկված և հայրենիքը պաշտպանելու ցանկություններով տոգորված ժողովրդին։

«Պաշտպանել Փարիզը կարելի էր միայն նրա բանվորներին զինելով, նրանցից իսկական ռազմական ուժ ստեղծելով, սովորեցնելով նրանց կռվի արվեստին հենց պատերազմում։ Սակայն զինել Փարիզը, նշանա-

կում էր զինել ռևոլյուցիան: Փարիզի հաղթանակը պրուսական հափշտակիչների վրա, ֆրանսիական բանվորի հաղթանակը կլիներ ֆրանսիական կապիտալիզմի և պետական պորտաբույծների վրա: Ազգային պաշտպանության կառավարությունը հարկադրված լինելով ընտրություն կատարել ազգային պարտքի և դասակարգային շահերի միջև և ոչ մի րոպե չտատանվեց— նա վերածվեց ազգային դավաճանության կառավարության»: (К. Маркс, Избр. произ., т. II, стр. 348, ռուսերեն):

Մարքսի այս խոսքերը որոշ չափով վերաբերվում են նաև այն դրությանը, որ ստեղծվեց 1940 թվի հունիսին, Փարիզն էվակուացիայի ենթարկելու հետ:

Ֆրանսիայի կառավարող շրջանները ներքաշելով երկիրը ժողովրդի շահերին խորթ պատերազմի մեջ, հենց որ պարզվեցին իրենց կողմից սարքած այդ ավանտյուրայի ահռելի հետևանքները, իսկույն շտապեցին անձնատուր լինել: Նրանք ձգտում էին, որքան հնարավոր է շուտ զինաթափ անել զինվորներին, խլել բանվորներից և գյուղացիներից զենքը, փրկել կապիտալի խախտված դիրքերը:

Ինչպես հաղորդում էր արտասահմանյան



մամուլը, ֆրանսիական կառավարությունն անձնատուր լինելու որոշումն ընդունել էր Փարիզի անկումից հենց անմիջապես հետո՝ ֆրանսիական բանակի գլխավոր հրամանատար գեներալ Վեյգանի հարկադրանքի տակ: Ինչպես գրում էին թերթերը, Վեյգանը հայտարարել էր. «Կամ պատերազմն անմիջապես դադարեցնել, կամ մեզ կսպառնան սոցիալական անկարգությունները»:

## ԿՈՄՈՒՆԱՅԻ ՀՌՉԱԿՈՒՄԸ

Այն ժամանակ, երբ բուրժուական կառավարությունը ժողովրդից ծածուկ պատերազմի դադարեցման պայմանների մասին բանակցություններ էր վարում, պաշարված Փարիզի աշխատավոր բնակչությունն արիաբար հաղթահարելով զրկանքները և սովը, ջանում էր կազմակերպել Փարիզի պաշտպանությունը: Մայրաքաղաքի համարյա բոլոր ռայոններում ստեղծվում էին կառավարական օրգանների գործունեությանը հսկող կոմիտեներ: Այդ ռայոնական կոմիտեների դելեգատներից՝ մայրաքաղաքի 20 ռայոնների կենտրոնական կոմիտե կազմակերպվեց:

Նոր լուր եկավ. դավաճան գեներալ Բազենը հետևելով Նապոլեոն երրորդի և մարշալ

*Մակ-Մահոնի օրինակին, զենքը վայր է դնել: Նա հանձնել է պրուսական զորքերին* Մեց *ամրոցը, իր հրամանատարության տակ գտնվող ողջ հսկայական բանակի հետ մեկտեղ:*

*Այդ բանը ժողովրդական զայրույթի մեծ պոռթկում առաջացրեց: Ազգային գվարդիայի պրոլետարական գումարտակները գրավեցին Փարիզյան Քաղաքային խորհրդարանը* (ратуша) *և ձերբակալեցին այնտեղ գտնվող մինիստրներին: Սակայն ազգային գվարդիայի հրամանատարական կազմի թուլության և անվճռականության հետևանքով մինիստրներին շուտով ազատ արձակեցին:*

*1871 թվի հունվարի 28-ին կառավարությունը հետևյալ պայմաններով զինադադարի համաձայնագիր ստորագրեց. զինաթափել Փարիզյան կայազորը, հանձնել մայրաքաղաքի մի քանի ամրոցները պրուսական հրամանատարությանը, իսկ մնացածները զինաթափել: Վճարել 200 միլիոն ֆրանկ կոնտրիբուցիա, դադարեցնել ռազմական գործողությունները ողջ երկրում, խաղաղության վերջնական պայմանները սահմանելու համար անմիջապես հրավիրել Ազգային ժողով:*



*Փետրվարի 13-ին Բորդոյում իշխանությունների տերորի և ճնշումների պայմաններում բացվեց Ազգային ժողովը, որն իր մեծամասնությամբ բաղկացած էր միապետականներից և այլ ռեակցիոներներից: Նա հաստատեց խաղաղության պայմանները — Էլզաս-Լոթարինգիայի հանձնումը Պրուսիային, և 5 միլիարդ ֆրանկ կոնտրիբուցիայի վճարումը:*

*Միաժամանակ Ազգային ժողովն ընդունեց մի շարք որոշումներ, որոնք ուղղված էին աշխատավորների շահերի դեմ, հօգուտ ունևոր դասակարգերի: Նա լիկվիդացիայի ենթարկեց բնակարանավճարի և պարտամուրհակների ժամկետահետաձգումները: Այնուհետև ձեռք առնվեցին բոլոր միջոցառումները որպեսզի ժողովուրդը վերջնականապես զինաթափ արվեր:*

*Իշխանության գլուխ նշանակված Տիերը հրաման արձակեց՝ գրավել Փարիզյան Մոնմարտր քաղաքամասը և խլել ազգային գվարդիայի ձեռքից նրա թնդանոթները և միտրալյոզները (գնդացիր):*

*Մոնմարտր ուղարկված զորքերը և ոստիկանական ջոկատները, այնտեղ բանվորների և բանվորուհիների հերոսական դի-*

մադրությանը հանդիպեցին, որոնք պատրաստ էին ժողովրդի դրամներով գնված զենքերը կրծքով պաշտպանելու: Զինվորներն անցան ժողովրդի կողմը: Գեներալ Կլեմանը և Տոման, որոնք հրամայել էին կրակ բացել այն ամբոխի վրա, որոնց մեջ կանայք և երեխաներն էին գերակշռում, զինվորների կողմից իսկույն գնդակահարվեցին: Մոնմարտրի իրադարձությունները մայրաքաղաքում ընդհանուր ապստամբություն բարձրացնելու ազդանշան հանդիսացան:

Տիերն իր բոլոր մինիստրների հետ միասին Վերսալ փախավ, որտեղ Ազգային ժողովը նիստեր էր ունենում: Դրանից հետո սկսվեց բուրժուազիայի փախուստը մայրաքաղաքից: Իշխանությունը Փարիզում անցավ ազգային գվարդիայի կենտրոնական կոմիտեի ձեռքը, որի շուրջը 270 գումարտակների ընդհանուր թվից՝ 215 պրոլետարական և մանր բուրժուական գումարտակներ էին համախմբվել:

Քաղաքային խորհրդարանի և այլ կառավարական շենքերի վրա արդեն կարմիր դրոշակներ էին փողփողում: 8 օրից հետո, մարտի 25-ին, ընդհանուր քվեարկությամբ կայացան Կոմունայի ընտրությունները:



## ԿՈՄՈՒՆԱՅԻ ՊԱՅՔԱՐԸ ԵՎ ԴԱՍԵՐԸ

Փարիզյան Կոմունայի գլխավոր պատմական արժանիքը հանդիսացավ այն, որ նա փշրեց բուրժուազիայի նախկին պետական մեքենան և ստեղծեց նոր պետություն՝ պրոլետարական դիկտատուրա: Կառավարության բոլոր անդամները, բոլոր պաշտոնյա անձինք ընտրովի էին և պատասխանատու էին ժողովրդի առջև: Նրանք կարող էին յուրաքանչյուր մոմենտ հանվել իրենց պաշտոններից:

Փարիզյան Կոմունան իր նախատեսած շատ ձեռնարկումները չկարողացավ իրագործել: Բուրժուազիան ինտերվենտների և ողջ միջազգային ռեակցիայի հետ մեկտեղ ռեվոլյուցիոն Փարիզի դեմ ռազմական գործողություններ սկսեց:

Սակայն Փարիզյան Կոմունան, չնայելով պատերազմին, պաշարմանը, սովին, աստիճանավորների սաբոտաժին, այնուամենայնիվ, կարողացավ իր գոյության կարճ ժամանակամիջոցում մի շարք կարևոր ձեռնարկումներ անցկացնել կյանքում:

Կոմունան լիկվիդացիայի ենթարկեց ժանդարմերիան և ոստիկանությունը: Եկեղեցին՝ խավարապաշտության և ռեակցիայի այդ

հենարանը, որը գտնվում էր պետական խնամատարության տակ, անջատվեց պետությունից։ Ժողովրդական կրթությունը ժողովրդի սեփականությունը դարձվեց. մըտցըվեց պարտադիր ուսուցման սկզբունքը։ Հատուկ դեկրետով ոչնչացվեցին պատերազմի սկզբից գոյացած բնակարանային վըճարների պարտքերը։

Արգելվեց այն իրերի վաճառքն աճուրդով, որոնք լոմբարդ էին դրված, իսկ 20 ֆրանկից ցածր արժեք ունեցող իրերը լոմբարդից վերադարձվեցին իրենց տերերին։ Կոմունան՝ փախած տերերի կողմից բախտի քմահաճույքին թողած գործարանները անմիջականորեն հանձնեց բանվորների կոլեկտիվներին։ Անմիջականորեն բանվորների կառավարմանը հանձնվեցին նաև այնպիսի ձեռնարկություններ, ինչպիսիք էին Լուվրի զենքի գործարանները և ազգային տպարանը։

Արգելվեցին բանվորների վրա տուգանքներ դրվելը և նրանց աշխատավարձից մասնահանումներ կատարելը։ Կոմունան իր վրա վերցրեց ընկած մարտիկների այրիների և որբերի խնամքը, օգնություն կազմակերպեց չքավոր ազգաբնակչությանը։ Կոմունան մեծ ուշադրություն դարձրեց նաև անգործու-



թյան վերացմանը։ Քաղաքամասերի մերիերին (мэр) կից՝ բանվորական ուժերի պահանջի և առաջարկի ցուցակագրումներ կազմակերպվեցին, փակվեցին բանվորական ուժ վարձող նախկին միջնորդային մասնավոր ձեռնարկությունները։

Ազգային գվարդիային հանդերձանք մատակարարելու նախկին պայմանագրերը ոչնչացնելով, նրանց փոխարինեց այնպիսի նոր պայմանագրերով, որոնց պայմանները մեծ մասամբ համապատասխանում էին բանվորների շահերին։

Սակայն Փարիզյան Կոմունան իր միջոցառումներում մինչև վերջը հետևողական չէր։ Կոմունարները անվճռականություն, իսկ երբեմն էլ ուղղակի անթույլատրելի մեծահոգություն էին ցուցաբերում վերսալյան կոնտրռևոլյուցիոներների և նրանց գործակալների հանդեպ։ Նրանք տատանվում էին բռնագրավել վերսալցիների գույքը, թաթը դնել Փարիզյան բանկի հսկայական բազմամիլիոն գումարների վրա։ Կոմունան բաց թողեց թշնամու դեմ հարձակողական պատերազմ վարելու և կենտրոնացած բանակ ստեղծելու համար մոմենտը։ Նա սահմանափակվեց բացարձակապես պաշտպանողական տակտիկայով միայն։

Այս սխալների գլխավոր պատճառը և Կոմունայի գլխավոր դժբախտությունը՝ միասնական պրոլետարական պարտիայի բացակայությունն էր, այնպիսի պարտիայի, որը կարողանար ղեկավարել ռևոլյուցիան։

Կոմունայի նիստերին ծայր չունեցող դիսկուսիաներ էին տեղի ունենում այն ժամանակ, երբ անհրաժեշտ էր գործել։ Մտքերի անվերջ փոխանակությունները տեղի էին ունենում Կոմունայի մեծամասնության՝ որը բաղկացած էր բլանկիստներից, և նրա փոքրամասնության միջև՝ որը բաղկացած էր պրուդոնիստներից։

Ե՛վ առաջինները, և՛ երկրորդները հեռու էին Մարքսի և Էնգելսի ռևոլյուցիոն թեորիայից։ Մարքսը, որն այդ ժամանակ ապրում էր Լոնդոնում՝ կոչ էր անում կոմունարներին՝ ավելի եռանդով գործել թշնամիների նկատմամբ և վտարել իրենց շարքերից ամեն տեսակի շաղակրատներին ու կասկածելի տարրերին։

Սակայն այդ բանը չարվեց։

Թշնամիների կողմից, ողջ մնացած երկրից կտրված ռևոլյուցիոն Փարիզին չհաջողվեց կապ հաստատել քաղաքի բոլոր մասերի հետ, որտեղ ապստամբություններ



էին տեղի ունենում։ Չհաջողվեց մարտական դաշինք կնքել գյուղացիության հետ և տանել նրանց իր հետևից։

Միասնական և անսասան ղեկավարության բացակայության հետևանքով առաջացած Փարիզի կտրվածությունը և նրա սխալները, վերսալցիների ռազմական գերազանցությունը և նրանց գործակալների պայթեցուցիչ գործողությունները ներսից — այս ամենը վճռեցին Կոմունայի բախտը։

Կոմունայից պահանջվելիք զգոնության և աչալրջության բացակայությունը — սիստեմատիկաբար Փարիզ ուղարկվող գործակալների օգնության շնորհիվ, հնարավորություն տվեցին դասակարգային թշնամուն՝ վնասարարական և պայթեցուցիչ աշխատանքներ կատարել ներսից։ Զգոնության բացակայությամբ էր բացատրվում նաև հենց այն, որ վերսալցիներին մայիսի 21-ին հաջողվեց Սեն-Կլու դարպասներից Փարիզ մտնել. շպիոնները հաղորդել էին Տիերին, որ այդ դարպասները թողնված են համարյա առանց որևէ պահպանության։

Կոմունայի պաշտպանները հերոսական և դաժան դիմադրությամբ դիմավորեցին Փարիզ ներխուժած վերսալցիներին։ Բանվոր-

ները պաշտպանելով յուրաքանչյուր բարրիկադը, հողի յուրաքանչյուր թիզը, կռվում էին կոնտրռևոլյուցիայի զինված ուժերի դեմ, մինչև արյան վերջին կաթիլը։ Ֆրանսիական բանվորների հետ մեկտեղ հերոսաբար կռվում էին Փարիզում գտնվող նաև օտարերկրյա ռևոլյուցիոներները։ Անհավասար պայքարը տևեց մայիսի 21-ից մինչև 28-ը՝ մինչև վերջին բարրիկադի ընկնելը։

Մոտ 30.000 հոգի սպանվածներ և կախաղան բարձրացվածներ, 13.450 հոգի ռազմական դատարանների կողմից տաժանակիր աշխատանքների և աքսորի դատապարտվածներ, տասնյակ հազարներով ձերբակալվածներ— ահա գազանացած վերսալցիների կողմից փարիզյան բանվորների վրա կատարված դաժան դատաստանի արդյունքները։

## ԿՈՄՈՒՆԱՅԻ ԳՈՐԾԸ ՀԱՂԹԱՆԱԿԵՑ ՍՍՌՄ-ՈՒՄ

Տերերի կողմնակիցները տոնեցին իրենց հաղթանակը։ Կոմունարների վրա կատարված դատաստանը ողջունեց ողջ միջազգային ռեակցիան, թափելով կոմունարների գլխին զրպարտության անսահման հեղեղներ։



Սակայն այն օրերին, երբ վերսալյան կոնտրռևոլյուցիան հայտարարում էր ի լուր ողջ աշխարհի, թե՝ «Սոցիալիզմը վերջացրինք երկար ժամանակով»— Մարքսն իր «Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում» մարգարեական գրքում գրեց.

«Բանվորների Փարիզն իր Կոմունայով միշտ կփառաբանվի իբրև նոր հասարակության առաջընթացը։ Նրա նահատակներն իրենց համար ընդմիշտ արձան կանգնեցրին բանվոր դասակարգի մեծ սրտում։ Նրա դահիճներին պատմությունն այժմ արդեն գամել է նշավակության սյունին, որից նրանց ազատելու համար անզոր են նըրանց տերտերների բոլոր աղոթքները»։ (Կ. Մարքս. «Քաղաքացիական պատերազմը Ֆըրանսիայում», Քաղհրատ, 1940, Երևան, էջ՝ 128—131)։

Մարքսի և Էնգելսի ուսմունքի հանճարեղ շարունակողներ Լենինը և Ստալինը, նրանց ուսմունքը պրոլետարական ռևոլյուցիայի մասին զարգացրին և խորացրին։ Նրանք ստեղծեցին, դաստիարակեցին և կոփեցին բոլշևիկյան հզոր պարտիան։ Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ և մեծ Լենինի, Ստալինի գլխավորությամբ կատարվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական

Մեծ Ռևոլյուցիան, որը հաստատեց մեր երկրում սովետների իշխանությունը։

Լենինը Կոմունայի և Սովետների իշխանության միջև գոյություն ունեցող անխզելի կապի մասին գրում էր.

«Սովետական իշխանությունը՝ դա պրոլետարիատի դիկտատուրայի զարգացման երկրորդ համաշխարհային-պատմական քայլն է կամ էտապն է հանդիսանում։ Առաջին քայլը Փարիզյան Կոմունան էր»։ (Ленин, Соч. т. XXIV, стр. 496, ռուսերեն)։

Ընկեր Ստալինը նույնպես նշում էր, որ սովետական պետությունն էր «...այն որոնվող և, վերջապես, գտնված քաղաքական ձևը, որի շրջանակներում պետք է իրագործվի պրոլետարիատի տնտեսական ազատագրությունը, սոցիալիզմի լիակատար հաղթությունը։

Փարիզի Կոմունան այդ ձևի սաղմն էր։ Սովետական իշխանությունը նրա զարգացումն ու ավարտումն է»։ (Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», 11-րդ հրատ. էջ 49, հայերեն)։

Մեր երկրի բանվոր դասակարգը պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար մղած իր պայքարում հաշվի առավ Փարիզյան Կոմունայի կարճաժամկետ, սա-



կայն շատ արժեքավոր փորձը և խուսափեց նրանց սխալների կրկնությունից։ Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ և աշխատավոր գյուղացիության հետ ամուր դաշինք կնքած, նա անսասան ձեռքով ճնշեց դասակարգային թշնամու դիմադրությունը, ջարդեց ներքին կոնտրռևոլյուցիայի և օտարերկրյա ինտերվենտների ուժերը, լիկվիդացիայի ենթարկեց շահագործող դասակարգերին և հաստատեց բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետությունը։

1917 թ. Հոկտեմբերյան պատմական կռիվների ժամանակից անցած տարիների ընթացքում, Լենինի-Ստալինի պարտիան ապահովեց սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում, ՍՍՌՄ-ի հզորությունը և ուժերի բարգավաճումն ու ամրապնդումը։ Իրագործվել է կոմունիզմի առաջին փուլը՝ սոցիալիստական հասարակությունը։ Ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ, Սովետական Միությունը թևակոխել է սոցիալիզմի կառուցման ավարտման և կոմունիզմին աստիճանաբար անցնելու շրջանը։

Առաջավոր մարդկության աչքերում անչափ բարձրացել է Սովետների հզոր երկրի հեղինակությունը։ Ողջ աշխարհի ճնշված-

ներն ու շահագործվածները հպարտությամբ և անսահման հույսերով են խոսում ու մտածում սովետների երկրի մասին։

Արևմտյան Ուկրայինայի և Արևմտյան Բելոռուսիայի աշխատավորներն աննկարագրելի խանդավառությամբ դիմավորեցին պանական լծից նրանց ազատագրողներին— մեր հերոսական Կարմիր Բանակի մարտիկներին, որոնց գալստին այնքան երկար ժամանակ նրանք սպասում էին։

Ուկրայինական և բելոռուսական ազատագրված եղբայրներից հետո, սովետների կարմիր դրոշի տակ կանգնեցին Բեսարաբիայի և Հյուսիսային Բուկովինայի աշխատավորները, այն Բեսարաբիայի, որը քսան տարի առաջ անօրեն կերպով խլվել էր մեր երկրից։

Լիտվան, Լատվիան, Էստոնիան ազատագրվելով ագահ պլուտոկրատական կլիկի ճիրաններից, նույնպես համերաշխորեն մտան սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքը։

Կոմունայի գործն առհավետ հաղթանակեց երկրագնդի մեկ վեցերորդ մասում։

Կոմունայի դրոշի ներքո ապրում են, աշխատում և նոր կյանք են կառուցում 193 միլիոն մարդ։



# ԿՈՄՈՒՆԱՅԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐՆ ԱՊՐՈՒՄ ԵՆ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՄԵՋ

Սովետական Միությունն իր հաջողություններով առույգություն և ուժեղ հույս է ներշնչում՝ բուրժուազիայի կողմից նոր իմպերիալիստական պատերազմ ներգրավված կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի շարքերում։ Այդ պատերազմն անհամար աղետներ ու զրկանքներ է բերում ոչ միայն պատերազմող երկրների, այլև չեզոք կապիտալիստական պետությունների ժողովրդական մասսաներին։

Այն ժամանակ, երբ կապիտալի մագնատները, ռազմական կապալառուները, ակցիոներական ընկերությունները, բիրժաները և բանկերը պատերազմական գնախաղում անհամար շահույթներ են վաստակում, մասսաների կենսական մակարդակն ավելի ու ավելի ցած է իջնում։ Բանվորական թաղամասերում և աղքատացած գյուղերում մոլեգնում են քաղցը, ցուրտը, հիվանդությունները։

Կառավարող դասակարգերը ռազմական ռեժիմի պայմաններն օգտագործում են աշ-

խատավորների դեմ՝ տեռորիստական ռեակցիոն միջոցառումներ անցկացնելու համար։ Բուրժուա-դեմոկրատական ազատության վերջին մնացորդներն անգամ ոչնչացնելով, կապիտալի դիկտատուրան ավելի ու ավելի մերկացած, ցինիկ բնույթ է ստանում։

Ֆրանսիայի կառավարող դասակարգերն օգտագործելով պարտությունից ստեղծված իրադրությունը «ազգային ռևոլյուցիա» կեղծ լոզունգի անվան տակ լիկվիդացիայի ենթարկեցին ռեսպուբլիկական կարգերը։ Միապետականները և այլ ծայրահեղ ռեակցիոներները նույնպես գլուխ բարձրացրին, որոնց ծառայության մեջ են գտնվում բուրժուազիային ծախված «սոցիալիստական» լիդերները և ռենեգատները։

Չեն դադարում մասսայական ձերբակալությունները։ Գլխավոր հարվածն ուղղված է Կոմունիստական պարտիայի դեմ՝ սոսկ որը հետևողականաբար, անշեղորեն պայքարում էր իմպերիալիստական պատերազմի դեմ։

1941 թ. հունվարին հրապարակված պաշտոնական, ըստ երևույթին՝ նվազեցրած տվյալներով, Ֆրանսիական Կոմունիստական պարտիայի ցրման օրից, ոստիկանությունը 6084 ձերբակալություն է կատարել, 15.534



կոմունիստի դատի տվել, ցրել է 970՝ կոմունիստների կողմից ղեկավարվող կազմակերպություններ, փակել է 384 թերթ։

Այնուամենայնիվ, չնայած հետապնդումների այդպիսի ալիքին, Ֆրանսիական Կոմունիստական պարտիան արիաբար շարունակում է աշխատել և աշխատել ընդհատակի ամենածանր պայմաններում։ Ֆրանսիական բուրժուական «Թան» թերթն ընթացիկ տարվա հունվար ամսվա 27-ի համարում գրում է.

«Չնայած ձևականորեն կոմունիստական պարտիան ցրված է, նրա գույքը բռնագրավված է, նրա հրատարակչությունները փակված են և նրա հազարավոր ակտիվիստներին լցրել են բանտերը և համակենտրոնացման ճամբարները,. այնուամենայնիվ, կոմպարտիան չի կործանվել։

Նա պահպանել է իր կադրերը և պահպանում է իր բոլոր կապերն անդամների հետ։ Նա զարմանալի ճկունությամբ հարմարվել է իր նոր դրությանը. նա, ազգաբնակչության ամենաբազմազան շերտերում իր աշխատանքը հաջողությամբ կատարելու նորանոր ձևեր է գտնում։ Ոստիկանությունն առանց դադարի կոմունիստներ է որսում, ամեն օր հայտնաբերվում և ոչնչացվում են

կոմունիզմի նորանոր օջախներ. սակայն շատ բան է դեռ մնում անելու»:

Անգլիայում, որին բուրժուական մամուլը երկերեսանիաբար կլասիկ դեմոկրատիայի երկիր է անվանում, «պետության պաշտպանության» բացառիկ օրենքներ են մըտցըվել, որոնք փաստորեն անօրինությունների և բռնությունների ռեժիմ են սահմանում աշխատավոր մասսաների նկատմամբ: Այդպիսի օրենքների հիման վրա փակված է անգլիական բանվոր դասակարգի մարտական թերթը, կոմպարտիայի օրգան՝ «Դեյլի Ուորկերը»:

Բայց այս ամեն միջոցառումները, ընդհակառակը, է՛լ ավելի են խորացնում բանվորների զայրույթը: Ժողովրդական մասսաների տրամադրությունն արտահայտեց միլիոնավոր աշխատավորների կողմից ընտրըված Ժողովրդական Կոնվենտի համագումարը: Համագումարը տեղի ունեցավ ռեակցիայի դեմ դաժան պայքար մղելու, բանվոր դասակարգի կենսական պայմանների բարելավման նշանաբանի տակ: Բանվորների տրամադրության մասին վկայում են նաև «Դեյլի Ուորկերի» փակման դեմ ուղղված բողոքների բազմաթիվ ելույթները:



Ո՛չ ռազմական պրոպագանդան, ո՛չ բռնության միջոցները, ոչինչ ի վիճակի չեն ճնշելու աշխատավորների աճող զայրույթը: Ռևոլյուցիոն գրոհի գաղափարներն ավելի ու ավելի խոր արմատներ են գցում աշխատավորների մեջ: Փարիզյան Կոմունայի փառավոր տրադիցիաներն ապրում են աշխատավորների սրտերում:

## ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԴՐՈՇԻ ՏԱԿ

Միջազգային պրոլետարիատը հավատարիմ մնալով Փարիզյան Կոմունայի տրադիցիաներին, մարտի 18-ի օրը — Փարիզյան Կոմունայի օրը — վերածել է բուրժուազիայի դասակարգային դատաստանների դեմ ուղղըված բողոքների օրվա, աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության և բուրժուական տեռորի զոհերի օգնության օրվա — ՄՕՊՐ-ի օրվա:

ՄՕՊՐ-ը, չնայած բոլոր հետապնդումներին, հաջողությամբ աշխատում է տասնյակ կապիտալիստական երկրներում: ՄՕՊՐ-ն օգնություն է ցույց տալիս կապիտալի տանջահարներին, հալածանքների և հետապընդումների ենթարկվող բոլոր ռևոլյուցիոներ-

ներին և դաստիարակում է աշխատավորներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։

ՄՕՊՐ-ի ամենաառաջատար և ամենահզոր սեկցիան հանդիսանում է Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Սեկցիան։

ՄՕՊՐ-ի նյութական և բարոյական օգնությունը պայքարի նոր ուժեր է տալիս և հաղթանակելու նոր ու նոր հավատ է ներշնչում կապիտալի տանջահարներին։ Կարմիր Բանակի հաղթանակների շնորհիվ Ֆինլանդիայի բանտերից ազատված, ներկայումս արդեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ ընտրված, ֆիննական հերոսական ռևոլյուցիոներ Տոյվո Անտիկայնենը՝ հիշելով այն մասին, թե ինչպես ՄՕՊՐ-ը մի քանի տարի առաջ փրկեց նրան մահապատժից, ասում է. «Ես իմ վրա փորձեցի աշխատավորների միջազգային համերաշխության հզորության ուժը։ Միայն այդ ուժն ինձ փրկեց մահից, ինչպես և փրկեց քաղբանտարկյալների հարյուրավոր և հազարավոր կյանքեր»։

ՍՍՌՄ-ի ՄՕՊՐ-ն իր աշխատանքով օժանդակում է սովետական ժողովրդի՝ կապիտալիստական երկրների աշխատավորների հետ ունեցած ինտերնացիոնալ կապերի ամրա-



պընդմանը, նա օժանդակում է ողջ առաջավոր մարդկության, Սովետական Միության հանդեպ տածած հարգանքի աճմանը և դրանով իրագործում է ընկեր Ստալինի ցուցմունքը.

«Հարկավոր է ուժեղացնել ու ամրապընդել ՍՍՌՄ բանվոր դասակարգի ինտերնացիոնալ պրոլետարական կապերը բուրժուական երկրների բանվոր դասակարգի հետ. հարկավոր է կազմակերպել բուրժուական երկրների բանվոր դասակարգի քաղաքական օգնությունը մեր երկրի բանվոր դասակարգին՝ մեր երկրի վրա ռազմական հարձակում լինելու դեպքում, ինչպես նաև կազմակերպել մեր երկրի բանվոր դասակարգի ամեն տեսակի օգնությունը բուրժուական երկրների բանվոր դասակարգին» (Ի. Ստալին։ Պատասխան ընկ. Իվանովին. առանձին բրոշյուր, էջ 30—31)։

## ԱՄՐԱՊՆԴԵԼ ՍՍՌՄ ՀԶՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Մոտերս, բուրժուական գերությունից ՍՍՌՄ աշխատավորների կամքով խլված, երկար ժամանակ բանտերում նստած Մատիաս Ռակոշին ասաց. «Սովետական ժողովուրդը և առաջին հերթին սովետական երիտասարդությունը դժվար թե կարողանան պատկերացնել, թե ուժի ինչպիսի՝ անսպառ

աղբյուր է հանդիսանում այն բանի գիտակցումը, որ երկրագնդի մեկ վեցերորդական մասում կառուցվում է կոմունիզմ, աշխատավոր մասսաների սիրելի առաջնորդ մեծ Ստալինի ղեկավարությամբ։ Այդ բանի գիտակցումը հսկայական խթան է հանդիսանում հանուն կապիտալիզմի շղթաներից ազատվելու և սոցիալիզմի համար մղած պայքարի գործում»։

Հենց այդ մասին են նաև վկայում Լեհաստանի, Բեսարաբիայի, Լատվիայի, Լիտվայի, Էստոնիայի, Ֆինլանդիայի հարյուրավոր ու հազարավոր քաղբանտարկյալները, որոնք ազատություն ստացան միայն Սովետական Միության շնորհիվ։

Մեր երկրում իրագործված են Փարիզյան կոմունարների ամենանվիրական և ամենահամարձակ երազները։ Սակայն մենք չենք կարող և չպետք է հանգստանանք ձեռք բերած նվաճումներով, հանգստանանք դափնիների վրա։ Է՛լ ավելի ամրապնդել Սովետական Միության տնտեսական և ռազմական հզորությունը, ահա՛ մեր պարտքը միջազգային պրոլետարիատի առաջ, մեր պարտքը Փարիզյան կոմունարների լուսավոր հիշատակի առաջ, մեր մեծ հայրենիքի առաջ։



Անդուլորեն և կարգապահությամբ աշխատել, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և որակը— այս է մեր երկրի յուրաքանչյուր քաղաքացու վարքի երկաթե օրենքը։

Սովետական Միությունը չի մասնակցում կապիտալիստական ողջ աշխարհը համակած երկրորդ իմպերիալիստական պատերազմին և խաղաղության և չեզոքության քաղաքականություն է վարում։ Սակայն միջազգային ներկա դրությունը բացառիկ կերպով բարդ է և անսպասելիություններով հղի։ Հիմա՝ ավելի քան երբևիցե մենք պետք է հիշենք ընկեր Ստալինի իմաստուն ցուցմունքը.

«Հարկավոր է մեր ամբողջ ժողովրդը պահել մոբիլիզացիոն պատրաստականության վիճակում՝ ռազմական հարձակման վտանգի դեմ-հանդիման, որպեսզի ոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների ոչ մի ֆոկուս չկարողանան մեզ հանկարծակիի բերել...» (Նույն տեղ, էջ 31)։

193 միլիոնանոց սովետական ժողովրդի ուղին տանում է դեպի կոմունիզմի լուսավոր գագաթները. և եթե որևէ մեկը համարձակվի խանգարել մեր հաղթական շարժու-

մը, ապա նա անխուսափելիորեն կհանդիպի ամենաառաջավոր տեխնիկայով հագեցած, ՍՍՌՄ զինված ուժերի դաժան հակահարվածին, այն ուժերի, որոնք հենվում են ողջ ժողովրդի՝ դեպի սոցիալիստական մեծ հայրենիքն ունեցած անսահման սիրո վրա։

Պատասխանատու խմբագիր՝
Դ. Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



ՎՖ 516, Պատվեր № 252, Տիրաժ՝ 10.000
Ստորագրված է տպագրության 10/III 1941 թ.
Տպագրական 1½ մամուլ, մեկ մամուլում 40.000 տառանիշ։

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան